Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1958



ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։



# ԴԵՊԻ ՊԱՐՏԻԱՅԻ 21-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշմամբ 1959 թվականի հունվարի 27-ին հրավիրվում է ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարը հետևյալ օրակարգով՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թ. թ. կոնտրոլ թվերը»։ Այդ հարցի մասին զեկուցող է հաստատվել ՍՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովը։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի վերաբերյալ զեկուցման թեզիսները հրապարակվելու են մամուլում։

Պլենումի որոշմամբ սահմանված են ՍՄԿԿ XXI համագումարի ներկայացուցչության հետևյալ նորմաները՝ վճռական ձայնով մեկ պատգամավոր պարտիայի 6000 անդամից և խորհրդակցական ձայնով՝ մեկ պատգամավոր պարտիայի անդամության 6000 թեկնածուից։ Պլենումը որոշեց ՍՄԿԿ XXI համագումարի պատգամավորներ ընտ-

րելու և ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թ. թ. կոնտրոլ թվերի վերաբերյալ զեկուցման թեզիսները քննարկելու համար 1958 թվականի դեկտեմբերին և 1959 թվականի հունվարի առաջին կեսին անցկացնել մարզային, երկրամասային պարտիական կոնֆերանսներ և միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների համագումարներ։

Ելնելով դրանից վերջերս հրավիրված Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմի պլենումը որոշեց ՀԿՊ XX արտահերթ համագումարը հրավիրել 1958 թվականի դեկտեմբերի 25-ին հետևյալ օրակարգով. 1. «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թ. թ. կոնտրոլ թվերի մասին» ՍՄԿՊ XXI համագումարին տրվելիք զեկուցման թեզիսները։ Զեկուցող Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Հ. Թովմասյան. 2. ՍՄԿՊ XXI համագումարի պատգամավորների ընտրություն։

Պլենումը որոշեց սահմանել Հայաստանի Կոմպարտիայի XX արտահերթ համագումարի ներկայացուցչության հետևյալ նորմաները. վճռական ձայնով մեկ պատգամավոր պարտիայի 150 անդամից և խորհրդակցա-



կան ձայնով մեկ պատգամավոր պարտիայի անդամության 150 թեկնածուից։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումար հրավիրելու լուրը արտադրական ու քաղաքական բուռն խանդավառություն առաջ բերեց մեր լայնածավալ Հայրենիքի ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի մեջ։ Ռեսպուբլիկայի աշխատավորները միաժամանակ ջերմորեն ընդունեցին ՀԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը Հայաստանի Կոմպարտիայի XX արտահերթ համագումար հրավիրելու վերաբերյալ։

Պարտիայի XX համագումարից հետո անցած ժամանակամիջոցում սովետական ժողովուրդը հսկայական հաջողություններ է ձեռք բերել երկրի արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման բնագավառում, խոշոր առաջընթաց քայլ են կատարել գիտությունն ու կուլտուրան, լուրջ բարելավումներ են կատարվել աշխատավորության բարեկեցության բարձրացման ուղղությամբ։ Անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները սովետական մարդիկ աննախընթաց հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության զարգացման գործում։ ՍՍՌՄ արդյունաբերու-

յան համախառն արտադրանքը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ աճեց համարյա 11 տոկոսով, 1957 թվականին՝ 10 տոկոսով և 1958 թվականի առաջին կիսամյակում՝ 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ՝ 10 և կես տոկոսով։ Ավելի բուռն թափով են ընթացել ծանր ինդուստրիայի վճռական ճյուղերի զարգացումը։ Չուգունի արտադրությունը արդեն 1957 թվականին կազմեց 37 միլիոն և 1958 թվականի առաջին կիսամյակում 19,3 միլիոն տոննա, պողպատի արտադրությունը՝ համապատասխանորեն կազմեց 51 միլիոն տոննա և 27 միլիոն տոննա, նավթի հանույթը՝ 98,3 միլիոն տոննա և 54 միլիոն տոննա, ածխի հանույթը՝ 463 միլիոն տոննա և 245 միլիոն տոննա, բնական գազի հանույթը 1957 թվականին հասավ 20,2 միլիարդ խորանարդ մետրի և 1958 թվականի առաջին կիսամյակում՝ 13,1 միլիարդ խորանարդ մետրի։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1957 թվականին կազմեց 209,5 միլիարդ կիլովատ-ժամ և 1958 թվականի առաջին կիսամյակում՝ 114 միլիարդ կիլովատ-ժամ։

Արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ ներկայումս Սովետական Միությունը ետ է թողել Եվրոպայի կապիտալիս-



տական բոլոր երկրներին և խնդիր է դնում հասնել և անցնել Ամերիկայի Միացյալ Նահանգներին։

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել սոցիալիստական գյուղատնտեսության արտադրության զարգացման ուղղությամբ։ Սովետական Միությունը մի շարք մթերքների արտադրությամբ արդեն հասել և նույնիսկ անցել է ԱՄՆ-ից։ Այսպես, օրինակ, Սովետական Միությունում կաթի արտադրությունը 1957 թվականին կազմեց ԱՄՆ-ի արտադրության մոտավորապես 95 տոկոսը, կենդանական յուղի արտադրությունը նույնիսկ մի փոքր բարձր էր։ Սովետական Միությունը ԱՄՆ-ին արդեն գերազանցում է ցորենի արտադրության ծավալով՝ ավելի քան երկու անգամ, շաքարի ճակնդեղի արտադրությամբ մոտավորապես 3 անգամ, բրդի արտադրությամբ՝ երկու և կես անգամ։ ՍՍՌՄ-ն ԱՄՆ-ին և աշխարհի մյուս բոլոր երկրներին զգալիորեն գերազանցում է բամբակի արտադրությամբ։

Չտեսնված զարգացման է հասել սովետական գիտությունը։ Սովետական Միությունում են կառուցվել աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը, աշխարհում ամենահզոր միկրոմանիկների արագացուցի-

նը, ջրարկված է աշխարհում առաջին ատոմային սառցահատը։ Գնալով ատոմային էներգիան ավելի լայն մասշտաբներով է կիրառվում խաղաղ նպատակներով։

Ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, աշխատավորների նյութական բարեկեցության բարելավման ուղղությամբ այդպիսի լուրջ հաջողություններ են ձեռք բերվել նաև մեր ռեսպուբլիկայում։ Պարտիայի XX համագումարից հետո մեզ մոտ շարք են մտել բազմաթիվ մեծ ու փոքր նոր արտադրական ձեռնարկություններ, կատարվել ու գերակատարվել են արտադրական առաջադրանքները, բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը։ Զգալի նվաճումներ են ձեռք բերվել նաև գյուղատնտեսության զարգացման ասպարեզում, բարձրացել է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը, շեշտակի վերելք է ապրում անասնաբուծությունը և անասնաբուծական մթերքների արտադրությունը։

Ներկայումս ռեսպուբլիկայի աշխատավորները, դեպի Կոմունիստական պարտիան ունեցած իրենց ջերմ սիրով ու անհուն նվիրվածությամբ, խորին երախտագիտությամբ ու վառ հավատով նորանոր պարտավորություն-



ներ են վերցնում պարտիայի XXI համագումարը արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու համար։

Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը բարձր խանդավառությամբ ընդունեց ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը պարտիայի XXI արտահերթ համագումար հրավիրելու մասին։ Ծանոթանալով պլենումի որոշման հետ, գործարանի բանվորներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները նոր պարտավորություններ վերցրին տարեկան պլանը ժամկետից շուտ կատարելու համար, հարյուրավոր բանվորներ մրցության մեջ են մտնում ի պատիվ ՍՄԿՊ XXI համագումարի։

Համագումարը արտադրական արժանավայել նվերներով դիմավորելու համար հրաշալի նախաձեռնություն և բարձր պարտավորություններ են վերցնում նաև ռեսպուբլիկայի մնացած արտադրական օբյեկտներն ու շինարարական կազմակերպությունները։

Կոտայքի շրջանի կոլտնտեսականները, կոլտնտեսուհիները և մեխանիզատորները ծանոթանալով այդ որոշմանը իրենց պատրաստակամությունն են հայտնում տալ երկրին ավելի շատ կենսամթերքներ, և գյուղատնտեսական հումք՝ սոցիալիստական

արդյունաբերությանը։ Հրազդան գյուղի կոլտնտեսության կովաբուծական ֆերմայի կթվորները պլենումի որոշմանը ծանոթանալուց հետո պարտավորվեցին իրենց խնամած ամեն մի կովից այս տարի ստանալ 500 կիլոգրամով ավելի կաթ, քան նախատեսված է պլանով։ Ֆերմայի աշխատողները պարտավորվեցին է՛լ ավելի բարձրացնել անասունների խնամքը, պետությանը սահմանվածից ավել վաճառել 400 ցենտներ կաթ և 40 ցենտներ միս։

Ի պատիվ Հայաստանի կոմպարտիայի XX համագումարի հրավիրման, Երևանի Ձեթօճառ կոմբինատի կոլեկտիվը պարտավորվել է մինչև տարվա վերջը արտադրել ավելի քան 3,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք, ինքնարժեքի իջեցման հաշվին տնտեսել կես միլիոն ռուբլի և այլն։

ՍՄԿՊ XXI համագումարը և ՀԿՊ XX համագումարը դիմավորել մեծ ու արժանավայել գործերով՝ ահա այս է ներկայումս Հայաստանի աշխատավորների, հայ ժողովրդի դեվիզը և դրանով նրանք կրկին անգամ կցուցաբերեն իրենց անհուն սերն ու նվիրվածությունը դեպի Կոմունիստական պարտիան, որի միակ հոգսը մեր Հայրենիքի հզորությունը, բարգավաճումը և սովետական ժողովրդի նյութական բարեկեցության անընդհատ բարձրացումն է։

---

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԲՈՑԱՇՈՒՆՉ ՄԱՐՏԻԿԸ

(Ստեփան Շահումյանի ծննդյան 80-ամյակի առթիվ)

Պ. ՂԱԶԱՐՅԱՆ

Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ, մեծ Լենինի հավատարիմ աշակերտ և մերձավորագույն զինակից Ստեփան Գևորգի Շահումյանը ծնվել է 1878 թվականի հոկտեմբերի 13-ին Թիֆլիսում։ 1889—1898 թ. թ. նա սովորում և ավարտում է տեղի ռեալական ուսումնարանը։ Հենց աշակերտական հասակում դրսևորվում են նրա արտակարգ ընդունակություններն ու աշխատասիրությունը։

Ականատես լինելով կյանքում գոյություն ունեցող սոցիալական անարդարություններին, նա անհուն ատելությամբ է լցվում դեպի ամեն տեսակի ճնշումը, բռնությունը և տարվում ազատության գաղափարներով, քաղաքականությամբ։ Դեռ ռեալական ու-

սումնարանում պատանի Շահումյանը մասնակցում է աշակերտական գաղտնի խմբակներին, ապա գլխավորում «Միաձան» աշակերտական խմբակը և նույնանուն ամսանախի հրատարակումը, որը պրոպագանդում էր բռնության դեմ պայքարի և ազատության գաղափարներ։

Գնալով ավելի ու ավելի էր մեծանում Շահումյանի հետաքրքրությունների շրջանակը և կյանքի ճանաչողությունը։ Մեծ հետաքրքրությամբ նա սկսում է կարդալ ռուս և հայ ռևոլյուցիոն դեմոկրատների աշխատությունները։ Սկսում է խորը ուսումնասիրել Մարքսի, Էնգելսի և Լենինի մի շարք աշխատություններ։

Մարքսիստական գրականության և ռուսական ռևոլյուցիոն միջավայրի մեծ ազդեցությունը վճռական դեր խաղացին Շահումյանի ռևոլյուցիոն-մատերիալիստական աշխարհայացքի ձևավորման գործում։ 1899 թվականին Ս. Շահումյանը Ջալալօղլիում (Ստեփանավանում) կազմակերպում է Հայաստանում առաջին մարքսիստական խմբակը։ 1900 թվականին Շահումյանը ընդունվում է Ռիգայի պոլիտեխնիկական ինստիտուտը։ Այստեղ ավելի ուժեղ եղավ ռուսական ռևոլյուցիոն շարժման ազդեցությունը նրա վրա



և նա վերջնականապես կապվեց այդ շարժման հետ։ Նույն թվականին էլ նա մտնում է ՌՍԴԲՊ-ի շարքերը։

Ինստիտուտում ուսանողության մեջ նա շուտով աչքի է ընկնում մտավոր մեծ կարողությամբ ու ռևոլյուցիոն համոզմունքներով։ Նա վայելել է առաջավոր, ռևոլյուցիոն երիտասարդության մեծ համակրանքը և դարձել նրանց ճանաչված ղեկավարներից մեկը։ Այստեղ Շահումյանը ակտիվ ռևոլյուցիոն գործունեություն է ծավալում, կազմակերպելով «Թեորետիկ» մարքսիստական խմբակը, և պայքար է սկսում նացիոնալիստ ուսանողների դեմ, սերտ կապ հաստատում սոցիալ-դեմոկրատական խմբակների և բանվորների հետ։ 1901 թվականին Ռիգայում գումարված Ռուսաստանի հայ ուսանողության համագումարում Շահումյանը ընտրվում է համագումարի նախագահ և իր կրակոտ ճառով մերկացնում է նացիոնալիստներին ու կոչ անում հայ ուսանողությանը ներգրավվել համառուսաստանյան ռևոլյուցիոն շարժման մեջ։ 1902 թվականի փետրվարին Շահումյանը որպես Ռիգայի առաջավոր ուսանողության պատգամավոր ակտիվորեն մասնակցում է Պետերբուրգի համառուսաստանյան ռևոլյուցիոն ուսանողության

առաջին համագումարի աշխատանքին և իր մարտական ելույթում ցարիզմի տապալման կոչ է անում։

1902 թվականի փետրվարին Շահումյանը ղեկավարում է Ռիգայի Պոլիտեխնիկ ինստիտուտի ուսանողական ռևոլյուցիոն խոշոր ելույթը, որի պատճառով նրան հեռացնում են ինստիտուտից ու արտաքսում Անդրկովկաս։ Շահումյանը եռանդուն կերպով մասնակցում է ռևոլյուցիոն շարժմանը, պայքարում հայ նացիոնալիստական ինտելիգենցիայի դեմ, պրոպագանդում մարքսիստական գաղափարներ, բանվորներին ներգրավում ռևոլյուցիոն կազմակերպությունների մեջ։

1902 թվականի ամռանը Շահումյանի և Բ. Կնունյանցի գլխավորությամբ ձևավորվում է «Հայ սոցիալ-դեմոկրատական միությունը» և նրանց նախաձեռնությամբ հիմնադրվում է այդ ռևոլյուցիոն կազմակերպության «Պրոլետարիատ» թերթը հայերեն լեզվով, որը հայ մարքսիստական առաջին թերթն էր։ Այդ թերթի առաջին համարում, որը լույս տեսավ հոկտեմբերի 1-ին, տպագրվեց Միության «Մանիֆեստը»։ Լենինը «Իսկրա»-յում ջերմորեն ողջունեց այդ մանիֆեստը։ «Պրոլետարիատ» թերթը, վրա-



ցական «Բրձոլա» թերթի հետ միասին լենինյան «Իսկրա»-ի հավատարիմ զինակիցներն ու նրա ռևոլյուցիոն գաղափարների եռանդուն պրոպագանդիստներն էին Անդրկովկասում և խոշոր դեր խաղացին աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց ռևոլյուցիոն շարժման մեջ ներգրավելու, մարքսիստական կազմակերպությունների ամրապնդման, ինչպես և օպորտունիստական-նացիոնալիստական պարտիաների դեմ պայքարելու գործում։

Մեկընդմիշտ պրոլետարական ռևոլյուցիային զինվորագրված երիտասարդ Շահումյանը իր ուսումը շարունակելու, գիտելիքները հարստացնելու բուռն ձգտմամբ 1902 թվականի աշնանը մեկնում է Բեռլին և ընդունվում տեղի համալսարանի փիլիսոփայական ֆակուլտետը։

Այստեղ Շահումյանը ուսման հետ մեկտեղ մոտիկից ծանոթանում, շփվում է տեղի բանվորական շարժման հետ, ռուս սոցիալ-դեմոկրատ էմիգրանտների հետ, կարդում և լսում է գերմանական ս.—դ. պարտիայի ականավոր գործիչներին և ակտիվ կերպով աշխատում ՌՍԴԲՊ Բեռլինի և մյուս կազմակերպություններում։ 1903 թվականի գարնանը Շահումյանը Ժնևում անձնապես ծա-

նոթանում է մեծ Լենինի հետ։ Դրանից հետո նրանց միջև ստեղծվում է սերտ կապ։ Դա բախտորոշ նշանակություն ունեցավ Շահումյանի կյանքում։ Նա վերջնականապես նվիրվեց պրոլետարական ռևոլյուցիայի գործին և նրա ռևոլյուցիոն փոթորկոտ կյանքը անսասան ընթացավ լենինյան դրոշի ներքո։ Նա անհապաղ կանգնեց բոլշևիկյան դիրքերում և մինչև իր պայծառ կյանքի վերջը մնաց հավատարիմ, մարտնչող լենինյան։ Լենինի ցուցումներով Շահումյանը արտասահմանում պրոպագանդիստական-հրատարակչական մեծ աշխատանք կատարեց։ Նրա շնորհիվ հայերեն լեզվով հրատարակվեցին մի շարք գրքեր և բրոշյուրներ, իսկ 1904 թվականին նրա թարգմանությամբ լույս տեսավ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի «Կոմունիստական պարտիայի մանիֆեստ»-ի առաջին հայերեն լրիվ հրատարակությունը։

1904 թվականին Շահումյանը արտասահմանից վերադառնում է Թիֆլիս և նոր լիցքով եռանդուն ռևոլյուցիոն աշխատանք ծավալում։ Նա ընտրվում է ՌՍԴԲՊ Կովկասյան Միութենական Կոմիտեի և նրա անլեգալ օրգան «Պրոլետարիատի կռիվը» թերթի (լույս էր տեսնում վրացերեն, հայերեն և ռուսերեն լեզուներով) խմբագրական կոլեգիայի ան-



դամ։ Ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին նա բազմաթիվ գործադուլներ, ցույցեր, միտինգներ է կազմակերպում ու ղեկավարում, մարտական ելույթներ ունենում, աշխատավորներին կոչ անելով հանուն բոլշևիկյան լոզունգների կենսագործման։

Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Մ. Մելիքյանի, Ա. Մռավյանի և մյուս ռևոլյուցիոներների ջանքերով բոլշևիկյան խմբակներ ու կոմիտեներ են ստեղծվում Երևանում, Ալավերդում, Ստեփանավանում (Ջալալօղլիում) և Հայաստանի ուրիշ վայրերում։ 1906 թվականին Շահումյանը և Ս. Սպանդարյանը ղեկավարեցին Ալավերդու բանվորների հայտնի գործադուլը։

Շահումյանը 1906 թվականին մասնակցեց ՌՍԴԲՊ 4-րդ, իսկ 1907 թվականին՝ 5-րդ համագումարներին որպես Երևանի և Բորչալուի բոլշևիկյան կազմակերպությունների պատգամավոր և իր ելույթներում անխնա մերկացրեց մենշևիկների օպորտունիզմը և բոլոր հարցերում պաշտպանեց լենինյան գիծը։ Շահումյանը, Ս. Սպանդարյանի հետ միասին 1906 թվականին լույս ընծայեց «Կայծ», «Նոր խոսք», և «Բանվորի ձայն» հայերեն բոլշևիկյան թերթերը, որոնք ռևո-

լյուցիոն մեծ աշխատանք կատարեցին հայ աշխատավորների մեջ։

Լինելով պրոլետարական մեծ ինտերնացիոնալիստ Շահումյանը անխնա պայքարում էր բուրժուական նացիոնալիստների դեմ։ Նա իր բազմաթիվ ելույթներում, հոդվածներում, տեսական արժեքավոր աշխատություններում մերկացնում էր հատկապես դաշնակցականների, սպեցիֆիկների և հայ մյուս նացիոնալիստական պարտիաների ռեակցիոն բնույթը, ինչպես նաև վրացական մենշևիկների և ադրբեջանական մուսավաթականների նացիոնալիստական էությունը։ Ս. Շահումյանը համոզիչ կերպով ցույց էր տալիս, որ նացիոնալիզմը եղել է ու մնում է Կովկասյան պրոլետարիատի ամենաոխերիմ թշնամին։ Նա բոլոր ազգերի աշխատավորներին կոչ էր անում պայքարել նացիոնալիզմի դեմ և եղբայրական միասնությամբ, համերաշխությամբ ռուս պրոլետարիատի հետ միասնաբար պայքարել ցարիզմի դեմ՝ հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի, որը կլուծի նաև ազգային հարցը, կվերացնի ազգային, ինչպես և ամեն մի ճնշում, և կստեղծվի ազգերի իսկական հավասարություն և բարեկամություն։

1907 թվականին բոլշևիկյան պարտիայի



կուցումով Շահումյանը ղեկավար աշխատանքի է անցնում Բաքվում։ Լինելով արդեն հմուտ, փորձված լենինյան ղեկավար գործիչ, Շահումյանը ստոլիպինյան ռեակցիայի ծանր տարիներին օգտագործում է անլեգալ և լեգալ բոլոր միջոցները բոլշևիկյան կազմակերպությունների ամրապնդման, պրոլետարիատի շարքերի համախմբման և նրան նոր մարտերի նախապատրաստման համար։ Նա գլխավորում է Բաքվի բանվորների մի շարք ռևոլյուցիոն ելույթները, հանդես գալիս մի շարք հոդվածներով, զեկուցումներով, զրույցներով, որտեղ մերկացնում է մենշևիկ-լիկվիդատորներին, դաշնակցականներին, տրոցկիստներին և մյուս հակառևոլյուցիոն պարտիաներին։ Շահումյանը «Բակինսկի ռաբոչի» ,«Բակինսկի պրոլետարի» և «Գուդոկ» բոլշևիկյան թերթերի կազմակերպիչներից և խմբագիրներից մեկն էր։ Այդ թերթերի բազմաթիվ առաջնորդողներ ու հոդվածներ նրան են պատկանում։

Շահումյանը հսկայական ջանքեր թափեց բոլշևիկյան պարտիայի Պրագայի կոնֆերանսի նախապատրաստման համար։ Սակայն մինչև կոնֆերանսը, 1911 թվականի սեպտեմբերի 30-ին ցարական կառավարու-



թյունը ձերբակալում է Շահումյանին որպես Կովկասյան բոլշևիկների ղեկավարի, որին խիստ հետևում էին դեռևս 1902 թվականից սկսած։ Բանտում նա ողջունեց Պրագայի կոնֆերանսի որոշումները։ Ութ ամիս հետո 1912 թվականին Շահումյանին աքսորում են Աստրախան։ Այնտեղ նա շարունակում է ռևոլյուցիոն եռանդուն աշխատանք կատարել։ Սերտ կապ է պահպանում տեղի բոլշևիկյան կազմակերպությունների հետ, ուղղություն տալիս նրանց գործունեությանը, գրում է բոլշևիկյան կրակոտ հոդվածներ, ակտիվ աշխատակցում «Պրավդա» թերթին։

Լենինի հետ Շահումյանի կանոնավոր նամակագրությունը, որը ստեղծվել էր նրանց անձնական ծանոթությունից հետո, այժմ ավելի է աշխուժանում։ Այդ ժամանակ նրանք իրար գրում են գլխավորապես ազգային հարցի մասին, որը բանվորական շարժման վերելքի այդ տարիներին բացառիկ կարևոր նշանակություն ուներ։ Իսկ Շահումյանը արդեն ճանաչված թեորետիկ էր, մանավանդ ազգային հարցի բնագավառում։ Լենինը նրան հանձնարարում էր իր կարծիքները գրել, աշխատություն գրել ազգային հարցի շուրջը։ 1913 թվականին Շահումյանը գրեց իր «Ազգային-կուլտուրական ավտոնոմիայի



մասին» իր նշանավոր աշխատությունը, որտեղ մարքսիստական-լենինյան դիրքերից պաշտպանում է ազգերի ինքնորոշման իրավունքը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։

1914 թվականին Շահումյանը աքսորավայրից վերադառնում է Բաքու և շարունակում ղեկավարել բոլշևիկյան կազմակերպությունները։ 1914 թվականի ամռանը նա գլխավորեց Բաքվի բանվորների նշանավոր գործադուլը, որը քաղաքական մեծ նշանակություն ունեցավ։

Երբ սկսվեց առաջին համաշխարհային պատերազմը, Շահումյանը և նրա ղեկավարությամբ Բաքվի ու ամբողջ Անդրկովկասի բոլշևիկները դատապարտեցին այն որպես անարդարացի, թալանչիական, իմպերիալիստական պատերազմ։ Այդպիսի ոգով անցավ 1915 թվականի հոկտեմբերին Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների կոնֆերանսը, որը նախաձեռնել և գլխավորում էր Շահումյանը։ Կոնֆերանսը ընդունեց լենինյան որոշումներ, որոնք աշխատավորներին կոչ էին անում իմպերիալիստական պատերազմը վերածել քաղաքացիականի, տապալել ցարիզմը և ստեղծել դեմոկրատական ռեսպուբլիկա, ավելի ուժե-

ղացնել պայքարը նացիոնալիզմի դեմ։ Կոնֆերանսը ընտրեց ղեկավար պարտիական կենտրոն ՌՍԴԲՊ(բ)-ի Կովկասյան բյուրո՝ Ս. Շահումյանի գլխավորությամբ։

Գնալով ավելի ու ավելի էր բարձրանում Շահումյանի հեղինակությունը, նրա ազդեցությունը աշխատավորների շրջանում։ Ցարական ոստիկանությունը գտնում էր, որ Կովկասից նրան հեռացնելը հանգստություն կստեղծի ամբողջ երկրամասում։ Եվ խիստ հետապնդումից հետո 1916 թվականի մարտին նրան ձերբակալում են և դեկտեմբերին աքսորում Սարատով։

1917 թվականի փետրվարին ցարիզմը տապալվեց։ Շահումյանը ազատվեց աքսորից և մարտին արդեն Բաքվում էր։ Սկսվեց նրա ռևոլյուցիոն կյանքի ամենապայծառ ժամանակաշրջանը։ Մինչև Բաքու հասնելը բանվորները նրան ընտրել էին Բաքվի Սովետի նախագահ։ Շահումյանը անմիջապես ձեռնամուխ եղավ Բաքվի պրոլետարիատի պայքարի կազմակերպմանը՝ հանուն Ապրիլյան թեզիսների, պարտիայի լենինյան ցուցումների կատարմանը։

1917 թվականին Շահումյանը Սովետների Համառուսական 1-ին համագումարում ընտրվեց Համառուսական Կենտգործկոմի



անդամ, պարտիայի 6-րդ համագումարում ընտրվեց Կենտկոմի անդամ և մասնակցեց Կենտկոմի սեպտեմբերի 15-ի նիստին, ուր քննարկվեցին Լենինի հայտնի նամակները զինված ապստամբության մասին։

Բաքվի պրոլետարիատը Շահումյանի գլխավորությամբ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի լուրը մեծ խանդավառությամբ ընդունեց և ոգեշնչված այդ հաղթանակով Անդրկովկասում առաջինը բարձրացրեց սոցիալիստական ռևոլյուցիայի դրոշը։ 1917 թվականի հոկտեմբերի 31-ին Բաքվի Սովետը որոշում ընդունեց Սովետների կողմից իշխանությունը վերցնելու մասին։ Բաքվի Սովետը Շահումյանի ղեկավարությամբ վճռական միջոցներ ձեռնարկեց ռևոլյուցիայի թշնամիների դեմ պայքարելու, սովետական իշխանության նվաճումները ամրապնդելու և ընդլայնելու համար։

Կովկասի դեպքերին ուշիմ հետևում էր Լենինը, Սովետական կառավարությունը։

1917 թվականի դեկտեմբերի 16-ին ՌՍՖՍՌ Ժողկոմսովետը Շահումյանին նշանակեց Կովկասի Գործերի Ժամանակավոր արտակարգ Կոմիսար։

Շահումյանը գլխավորում է Անդրկովկասյան ժողովուրդների պայքարը սովետական

իշխանության համար։ Լենինը ամենահնարավոր օգնություն էր կազմակերպում Բաքվի Սովետին, Անդրկովկասի բոլշևիկներին, ամենաարժեքավոր ցուցումներ և խորհուրդներ տալիս նրանց։ Լենինի 1918 թվականի փետրվարի 14-ի հեռագրում ասված է՝

«Թանկագին ընկեր Շահումյան։

. . . . . . . . . . . . . .

Մենք հրճվանքի մեջ ենք Ձեր հաստատակամ և վճռական քաղաքականությունից։ Կարողացեք դրան միացնել այն ամենազգույշ դիվանագիտությունը, որը անպայման թելադրվում է այժմյան դժվարագույն դրությամբ,— և մենք կհաղթենք»։

Հակառևոլյուցիոն ուժերը համախմբվում էին Բաքվի սովետական իշխանությունը տապալելու համար։ 1918 թվականի մարտ—ապրիլին Բաքվի պրոլետարիատը գլխովին ջախջախեց մուսավաթականների և մյուս թշնամի տարրերին, որոնք սովետական իշխանության խեղդման նոր փորձ արեցին։ Հակառևոլյուցիայի դեմ այդ փայլուն հաղթանակից հետո, 1918 թվականի ապրիլի 25-ին ստեղծվեց Բաքվի Ժողովրդական Կոմիսարների Սովետը՝ Շահումյանի նախագահությամբ։ Բաքվի Կոմունան իրականացրեց մի շարք սոցիալիստական միջոցա-



ռումներ։ Նա ազգայնացրեց նավթարդյունաբերությունը, բանկերը, նավատորմը, բեգական և խանական հողերը բռնագրավեց և հանձնեց գյուղացիներին, սահմանեց 8-ժամյա աշխատանքային օր, կազմակերպեց կոմունայի զինված ուժեր և այլն։ Բաքվի Կոմունայի հաջողությունները զազազեցնում էին ներքին ու արտաքին թշնամիներին. Նրանք անընդհատ նոր ուժեր էին քշում Կոմունայի դեմ։

1918 թվականի հուլիսին Կոմունայի դրությունը խիստ ծանրացավ։ Դեպի սովետական Բաքու էին շարժվում գերմանա-թուրքական զորքերը մուսավաթականների հետ միասին, ինչպես նաև հակառևոլյուցիոն այլ ուժեր։ Իսկ թիկունքից հարվածում էին անգլիական իմպերիալիզմի գործակալներ՝ աջ էսեռները, մենշևիկները և դաշնակները, որոնք այդ ծանր պահին դավաճանաբար Բաքու էին հրավիրում անգլիական ինտերվենտներին։

Բաքվի հերոսական պրոլետարիատը Շահումյանի, Ա. Ջափարիձեի, Մ. Ազիզբեկովի, Վ. Ֆիոլետովի և մյուս քաջարի կոմիսարների գլխավորությամբ ոտքի էր կանգնել Կոմունայի պաշտպանության համար։ Դժվարին կացության մեջ էր այդ պահին նաև

Սովետական Ռուսաստանը, այնուամենայնիվ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը Լենինի գլխավորությամբ Բաքվի Կոմունային ուղարկում էին զինամթերք, զինված ջոկատներ, պարեն և այլն։

Սակայն ուժերը խիստ անհավասար էին։ 1918 թվականի հուլիսի 31-ին ընկավ Բաքվի հերոսական Կոմունան. Բաքվում սովետական իշխանությունը ժամանակավորապես պարտվեց։ Ստեղծվեց «Ցենտրոկասպիի» հակառևոլյուցիոն կառավարությունը, որը անմիջապես Բաքու հրավիրեց անգլիական ինտերվենտներին, իսկ վերջիններիս պահանջով շտապ ձերբակալեց Շահումյանին և նրա հետ նաև Բաքվի մյուս հերոս կոմիսարներին։ Թուրքական զորքի Բաքու մտնելուց մի քանի ժամ առաջ Ա. Ի. Միկոյանի գլխավորությամբ, մի քանի բոլշևիկների ջանքերով կոմիսարները ազատվեցին բանտից և էվակուացվեցին։ Բայց դավաճանությամբ նավը նրանց տարավ Կրասնովոդսկ, որտեղ ընկան անգլիական ինտերվենտների և էսէռների ձեռքը։ 1918 թվականի սեպտեմբերի 20-ին Կրասնովոդսկում հրատարակվող «Գոլոս Սրեդնեյ



Ազիի» թերթում այդ մարդասպանները գրեցին «Մեր ձեռքն են ընկել Բաքվի բախտի նախկինում տնօրինողները... Մեր որսի մեջ է գտնվում հայտնի հերոսներից մեկը՝ Շահումյանը, որի անունը վաղուց կնքել են «Կովկասի Լենին»»։ Հենց սեպտեմբերի 20-ի գիշերն էլ անգլիական ինտերվենտներն ու նրանց էսէռական վարձկանները Կրասնովոդսկից 207-րդ վերստի վրա գազանաբար սպանեցին Բաքվի հերոս 26 կոմիսարներին։ Անվեհեր ռևոլյուցիոներ Շահումյանը և նրա մարտական զինակիցները ընկան հերոսի մահով՝ հպարտորեն բացականչելով «Մենք մեռնում ենք կոմունիզմի համար։ Կեցցե՛ կոմունիզմը»։

Ս. Շահումյանը կոմունիզմի քաջարի մարտիկ, պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ էր, լենինյան տիպի պարտիական ու պետական տաղանդավոր ղեկավար գործիչ։ Նա նաև խոշոր մարքսիստ թեորետիկ էր. իրավամբ Ս. Օրջոնիկիձեն նրան անվանել է թեորիական մարքսիզմի ծանր հրետանի։

Պանծալի ռևոլյուցիոներ, պարտիայի ականավոր գործիչ Շահումյանի կերպարը կոմունիզմի համար պայքարի ոգեշնչող վառ օրինակ է։

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐԻՆ

1958 թվականի հոկտեմբերի 29-ին լրանում է Համամիութենական լենինյան Կոմունիստական երիտասարդական միության 40-ամյակը։ Դա կարևոր իրադարձություն է, նշանակալից տարեթիվ կոմերիտմիության կյանքում։ Ծնվելով Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի և սովետական իշխանության հաղթանակի համար մղած հերոսամարտերում, լենինյան կոմերիտմիությունը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իր գոյության քառասուն տարիների ընթացքում անցել է մեծ ու փառավոր ուղի։

Նրա շարքերում աճել են միլիոնավոր երիտասարդ հայրենասերներ, կոմունիստական հասարակարգի ակտիվ կառուցողներ, որոնք աշխատանքում ու մարտերում ապացուցել են իրենց անսահման սերն ու նվիրվածությունը Կոմունիստական պարտիայի գործին, Հայրենիքին։ Իր մարտական ու աշխատանքային սխրագործություններով կոմերիտ-



միությունը վաստակել է սովետական ժողովրդի ընդհանուր հարգանքն ու սերը։

1917 թվականի փետրվարյան բուրժուադեմոկրատական ռևոլյուցիայի հաղթանակից հետո, Պետրոգրադում, Մոսկվայում, Եկատերինբուրգում, Բաքվում, Ուրալի և Ռուսաստանի արդյունաբերական մյուս կենտրոններում երևան են գալիս բանվոր երիտասարդության առաջին կազմակերպությունները։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո աճում է բանվորագյուղացիական երիտասարդական միությունների թիվը, ընդգրկելով ամբողջ Ռուսաստանը։ 1918 թվականի հուլիսին պարտիայի Կենտկոմի ցուցումով ստեղծվում է Ռուսաստանի երիտասարդական միությունների առաջին համագումարի հրավիրումը նախապատրաստող Կազմկոմիտե։

Երիտասարդական միությունների համառուսաստանյան առաջին համագումարը բացվեց 1918 թվականի հոկտեմբերի 29-ին։ Համագումարը հայտարարեց, որ երիտասարդական միությունը համերաշխ է Ռուսաստանի Կոմունիստական պարտիայի հետ, որ նա իրեն նպատակ է դնում տարածել կոմունիզմի գաղափարները և բանվորագյու-

ղացիական երիտասարդությանը ակտիվորեն ներգրավել Սովետական Ռուսաստանի շինարարության մեջ, որ երիտասարդության միությունը պարտիայի ղեկավարությամբ աշխատող ինքնուրույն կազմակերպությունն է։

Համագումարը որոշում ընդունեց երիտասարդական միությունը կոչել Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդության Միություն (ՌԿԵՄ)։ Կոմերիտմիությունն իր ըստեղծման առաջին իսկ օրից դարձավ պարտիայի հավատարիմ օգնականը և մարտական ռեզերվը։

Հայաստանում առաջին կոմերիտական կազմակերպությունը ստեղծվում է Երևանում, 1919 թվի ապրիլին Ղ. Ղուկասյանի, Ա. Բուդաղյանի և Ա. Խանջյանի կողմից։ 1919 թվականի մայիսին կոմերիտական կազմակերպություն է ստեղծվում Նոր-Բայազետում, հունիսին՝ Ալեքսանդրապոլում, հուլիսին՝ Դիլիջանում։

Կոմունիստական պարտիայի, Վ. Ի. Լենինի կոչով կոմերիտմիությունը մեկ մարդու նման ոտքի ելավ պաշտպանելու երիտասարդ սոցիալիստական Հայրենիքը ներքին հակառևոլյուցիայից և իմպերիալիստական ինտերվենտներից։

Քաղաքացիական պատերազմի ժամանակ



ցուցաբերած արիության ու հերոսության համար 1928 թվականին կոմերիտմիությունը պարգևատրվում է Կարմիր դրոշի շքանշանով։

Կոմերիտմիության պատմության մեջ կարևորագույն ուղենիշ հանդիսացավ 1920 թվականի հոկտեմբերին գումարված ՌԿԵՄ 3-րդ համագումարը, որտեղ երիտասարդական միությունների խնդիրների մասին ծրագրային ճառով հանդես եկավ Վ. Ի. Լենինը։ Նա կոմերիտականներին կոչ արեց լինել «կոմունիստական հասարակության առաջին կառուցողները միլիոնավոր կառուցողների մեջ»։

1924 թվականի հուլիսին գումարվեց կոմերիտմիության 6-րդ համագումարը, որը ՌԿԵՄ 700 հազար անդամների անունից հսկայական ոգևորությամբ որոշում ընդունեց կոմերիտմիությունը կոչել Մեծ Լենինի անունով։

Կոմունիստական պարտիայի հայրական հոգատարության շնորհիվ կոմերիտմիությունը սրբությամբ կատարեց Իլյիչի պատգամները։ Նա իր ամբողջ ուժերն ու եռանդը ի սպաս դրեց մեր Հայրենիքի ծաղկման ու բարգավաճման համար։

Նկատի ունենալով լենինյան կոմերիտ-

միության աշխատանքային հերոսությունը սոցիալիստական շինարարության բոլոր ճակատներում և նրա ցուցաբերած նախաձեռնությունը հարվածայնության ու սոցիալիստական մրցության ծավալման գործում, Սովետական կառավարությունը 1931 թվականին նրան պարգևատրում է Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով։ ՀՍՍՌ Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով պարգևատրվում է Հայաստանի կոմերիտմիությունը։

Կոմերիտմիությունը մեր երկրում կատարված կուլտուրական ռևոլյուցիայի իրականացման ակտիվ մասնակիցն է։ Անգրագիտությունը վերացնելու և գիտությանը տիրապետելու համար կոմերիտական արշավները հսկայական դեր խաղացին այդ գործում։ Պարտիայի ղեկավարությամբ կոմերիտմիությունը վիթխարի աշխատանք կատարեց երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության ուղղությամբ, սովետական երկրի պատանիներին ու աղջիկներին դաստիարակելով մարքսիզմ-լենինիզմի գաղափարների, ջերմ հայրենասիրության ոգով, որը վառ կերպով դրսևորվեց հիտլերյան Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ պատերազմի



ահեղ օրերին։ Սովետական Հայրենիքի ազատության, անկախության և պատվի համար մղվող համաժողովրդական պատերազմում կոմերիտականներն ու երիտասարդները մասսայական հերոսության, անձնազոհության, արիության չտեսնված օրինակներ տվեցին։ Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիան ըստ արժանվույն գնահատեցին կոմերիտմիության մատուցած մեծ ծառայությունները հայրենիքին, նրան 1945 թվականին պարգևատրելով Լենինի շքանշանով։ ՍՍՌՄ Զինված ուժերի շարքերում գտնված ավելի քան 3,5 միլիոն կոմերիտականներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, 7.000 կոմերիտականներ ու կոմերիտմիության սաներ արժանացան Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանը։

Սովետական ժողովրդի սրտում հավերժ կապրի իրենց մատաղ կյանքը Հայրենիքի համար զոհած Զոյա Կոսմոդեմյանսկայայի, Օլեգ Կոշևոյի, Ալեքսանդր Մատրոսովի, Հունան Ավետիսյանի և բյուրավոր կոմերիտական հերոսների պայծառ հիշատակը։

Հայաստանի կոմերիտմիությունը նույնպես պատվով կատարեց իր սրբազան պարտքը Հայրենիքի հանդեպ։ Պատերազմի ժամանակ ցուցաբերած խիզախության և հերոսու-

թյան համար ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրված 66.802 հայ մարտիկների կեսից ավելին կոմերիտականներ էին։ Սովետական Միության Հերոսի կոչման արժանացան 104 հայ մարտիկներ, որոնցից 65-ը կոմերիտականներ էին։

Հետպատերազմյան տարիներին կոմերիտմիության բազմամիլիոն բանակը սովետական ժողովրդի հետ միասին՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ձեռնամուխ եղան մեր երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման գործին։ Կոմերիտմիության կյանքում նշանավոր իրադարձություն հանդիսացավ ՀամԼԿԵՄ 30-ամյակը։ Այդ նշանավոր տարելիցի կապակցությամբ Հայրենիքին մատուցած մեծ ծառայությունների համար կոմերիտմիությունը պարգևատրվեց Լենինի երկրորդ շքանշանով։

Կոմերիտմության, սովետական ողջ երիտասարդության համար ոգեշնչման իսկական աղբյուր հանդիսացան Կոմունիստական պարտիայի 20-րդ համագումարի պատմական որոշումները, որոնք նրանց առաջ բացեցին սխրագործությունների, խիզախումների, ստեղծագործական անսպառ եռանդ ցուցաբերելու նոր ու լայն ասպարեզ։



Կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության կոչով, իր սրտի թելադրանքով սովետական երիտասարդությունը ոտքի ելավ յուրացնելու խամ ու խոպան հողերը և աշխատանքային մեծագույն սխրագործություն կատարեց, կյանք տալով ավելի քան 36 միլիոն հեկտար դարերով անմշակ հողերի։ Բարձր գնահատելով լենինյան կոմերիտմիության ակտիվ մասնակցությունը սոցիալիստական շինարարությանը և հատկապես խամ ու խոպան հողերի յուրացմանը, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը 1956 թվականին կոմերիտմիությանը երրորդ անգամ պարգևատրեց Լենինի շքանշանով։ 262 երիտասարդ հայրենասերների շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում, ավելի քան 30 հազար կոմերիտականներ ու երիտասարդներ պարգևատրվեցին ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով։

Հիանալի նախաձեռնություններով ու ստեղծագործական ոգեշունչ աշխատանքով նշանավորվեց նաև ՀամԼԿԵՄ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի կոմերիտմիության գործունեությունը հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Հայաստանի կոմերիտականների ու երիտասարդների ամե-

նակտիվ մասնակցությամբ են կառուցված ռեսպուբլիկայի խոշորագույն՝ Սևանի լճային, Գյումուշի և Արզնիի հիդրոէլեկտրակայանները։ Հայաստանի կոմերիտմիության աշխատանքային պանծալի գործերի պսակն է կազմում նրա մասնակցությունը խամ ու խոպան հողերի յուրացման գործին։ 1954—1955 թվականներին Հայաստանի կոմերիտմիության ուղեգրերով խամ ու խոպան հողերը մշակելու համար Ղազախստան մշտական աշխատանքի մեկնեցին ռեսպուբլիկայի երիտասարդության մոտ 3 հազար պատվիրակներ։ Ուս-ուսի տված մեր երկրի բոլոր ժողովուրդների պատանիների ու աղջիկների հետ նրանք ցույց տվեցին անձնուրաց աշխատանքի օրինակներ։ Խամ ու խոպան հողերում աճեցրած այս տարվա առատ բերքը անկորուստ հավաքելու համար ծավալված համաժողովրդական պայքարին մասնակցելու համար Ղազախական ՍՍՌ-ի Կուստանայի մարզն են մեկնել ռեսպուբլիկայի երիտասարդության 4 հազար ներկայացուցիչներ։ Հայաստանի կոմերիտմիությունը ակտիվ մասնակցություն ունեցավ Հեռավոր Արևելքի և Հյուսիսի բնական հարստությունների յուրացման համար կոմերիտական արշավին։ Հայաստանի 500 կոմերիտականներ



ու երիտասարդներ մեծ խանդավառությամբ աշխատում են Վլադիվոստոկի նորակառույցներում։ Միայն վերջին երկու տարվա ընթացքում ռեսպուբլիկայի անասնապահական ֆերմաները մշտական աշխատանքի են մեկնել 5 հազար, իսկ վերջին 4 ամսվա ընթացքում՝ 800 երիտասարդներ։

Իր բոլոր հաջողությունների համար կոմերիտմիությունը պարտական է Կոմունիստական պարտիային։ Պարտիայի ղեկավարությունը եղել է և կմնա ամենագլխավորը և ամենահիմնականը կոմերիտմիության ամբողջ աշխատանքում։ Այն կոմերիտմիության ուժի և արիության անսպառ աղբյուրն է։

Լենինյան կոմերիտմիությունը դեպի իր 40-ամյակն է գնում սերտորեն համախմբված հարազատ Կոմունիստական պարտիայի շուրջը, պատրաստ կատարելու նրա ամեն մի առաջադրանքը։

---

# Ի ՊԱՏԻՎ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ

(Թվեր և փաստեր)

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը և Հարազատ Կոմունիստական պարտիայի XXI համագումարը արժանավայել գործերով են նշանավորում մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները։ Նրանք ուժ ու եռանդ չեն խնայում երկրին տալ ավելի շատ կենսամթերք, իսկ արդյունաբերությանը ավելի շատ հումք։ Ահա այդ մասին թվեր և փաստեր։

✪ Ռեսպուբլիկայի շատ շրջաններ և բազմաթիվ կոլտնտեսություններ ժամկետից շուտ կատարեցին պետությանը գյուղատնտեսական մթերքներ և հումք վաճառելու իրենց պարտավորությունները։

✪ Ղուկասյանի շրջանի կոլտնտեսությունները օգոստոսի 20-ին կատարել են պետությանը կաթ հանձնելու տարեկան պլանը։ Պետությանը հանձնվել և վաճառվել է 18.755 ցենտներ կաթ, որը 2.723 ցենտներով ավելի է, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։

✪ Ամասիայի շրջանի կոլտնտեսություններում գնալով բարձրանում է անասունների կաթնատվությու-



նը։ Անցյալ տարի ամեն մի կովից ստացվեց 1.722 կիլոգրամ կաթ, որը 20 տոկոսով ավելի էր նախորդ տարվա համեմատությամբ, իսկ այս տարվա անցած 6 ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ 15,3 տոկոսով ավելացավ կաթի արտադրությունը։

✪ Արտաշատի շրջանի կոլտնտեսությունները ժամկետից շուտ կատարեցին կաթի հանձնման տարեկան պլանը։ Պետությանը վաճառվել է 27.956 ցենտներ կաթ։ Կաթի վաճառքը պետությանը շարունակվում է։

✪ Նոր Բայազետի շրջանի կոլտնտեսությունները ժամկետից շուտ կատարեցին հացամթերման պլանը և պլանից դուրս պետությանը վաճառեցին 251 ցենտներ հացահատիկ։ Հացահատիկի վաճառքը պետությանը շարունակվում է։ Նույն շրջանում այս տարվա 8 ամսում, անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, մսի համախառն արտադրանքը ավելացել է 1.656, կաթինը՝ 8.560 ցենտներով։

✪ Այս տարի Մարտունու շրջանի Ջոլաքար գյուղի կոլտնտեսությունում խոզերի գլխաքանակը, 1955 թվականի համեմատությամբ, ավելացել է 15 անգամ, իսկ ձվի արտադրությունը՝ 30 անգամ։ Նույն կոլտնտեսությունում 1955 թվականին կար ընդամենը 112 կով և ամեն մի կովից ստացվել էր 1.270 կիլոգրամ կաթ, այժմ կոլտնտեսությունն ունի 300 կով և յուրաքանչյուր կովից արդեն ստացել է 1.800 կիլոգրամ կաթ։

✪ Էջմիածնի շրջանի կոլտնտեսությունները կատարել են շերամի բոժոժի հանձնման տարեկան պլանը։

✪ Այս տարի մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները արդյունաբերությանը կտան 32 հազար տոննա բամբակ, 10.500 տոննա ծխախոտ, 65.630 տոննա խաղող։

✪ Ստեփանավանի և Նոր Բայազետի շրջանի կոլտնտեսությունները սեպտեմբերի 10-ին կատարեցին բրդի հանձնման տարեկան պլանը։ Բրդի վաճառքը պետությանը շարունակվում է։

✪ Սեպտեմբերի 14-ին շահագործման հանձնվեց Կոտայքի ջրանցքը, որը ոռոգելու է 7 հազար 500 հեկտար տարածություն։

✪ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում, զգալի չափով ավելացել է կաթի արտադրությունը։ Բասարգեչարի շրջանում մինչև այս տարվա սեպտեմբերի 1-ը ամեն մի կովից ստացվել է 1.147 կիլոգրամ կաթ, անցյալ տարվա 916 կիլոգրամի փոխարեն, Նոր Բայազետում՝ 1.188 կիլոգրամ, անցյալ տարվա 879 կիլոգրամի փոխարեն. Ստեփանավանում՝ 1.413 կիլոգրամ, անցյալ տարվա 1.354 կիլոգրամի փոխարեն, Շահումյանի շրջանում՝ 2.036 կիլոգրամ, անցյալ տարվա 1.881 կիլոգրամի փոխարեն և այլն։

✪ Այս տարվա հունվարի 1-ից մինչև սեպտեմբերի 1-ը Նոր Բայազետի կոլտնտեսություններում կաթի համախառն արտադրանքը կազմել է 30.682 ցենտներ,



անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի 21.925 ցենտների դիմաց, Արտաշատի շրջանում՝ 52.087 ցենտներ, անցյալ տարվա 41.841 ցենտների դիմաց, Բասարգեչարի շրջանում՝ 34.296 ցենտներ, անցյալ տարվա 27.527 ցենտների դիմաց, Վեդիի շրջանում՝ 25.682 ցենտներ, անցյալ տարվա 19.257 ցենտների դիմաց և այլն։

✪ Գորիսի շրջանի կոլտնտեսությունները կատարելով ստանձնած պարտավորությունները, պլանով նախատեսված 20 հազար 750 տոննայի դիմաց մինչև սեպտեմբերի 1-ը պատրաստել են 32 հազար 441 տոննա սիլոս, պլանը կատարելով 156 տոկոսով։

✪ Աղինի, Ազիզբեկովի, Արթիկի, Ախտայի և Եղեգնաձորի շրջանների կոլտնտեսությունները սեպտեմբերի 20-ին կատարեցին բրդի հանձնման տարեկան պլանը։

✪ Ընթացիկ տարվա անցած ութ ամսվա ընթացքում ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում 10 հազար տոննայով ավել կաթ է արտադրվել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում։ Կաթի մթերման տարեկան պլանը ռեսպուբլիկայում արդեն կատարվել է 98 տոկոսով, իսկ մսինը՝ 75 տոկոսով։

✪ Ի պատիվ համագումարի ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ պայքարում են ամեն մի հեկտարից 28—30 ցենտներ բամբակ, 350—400 ցենտներ շաքարի ճակնդեղ, 20—25 ցենտներ ծխախոտ, 100—150 ցենտներ խաղող ստանալու համար։

# ԱՄԵՐԻԿԱ-ԱՆԳԼԻԱԿԱՆ ԻՆՏԵՐՎԵՆՏՆԵՐԻ ԳԱՐՇԱՊԱՐԻ ՏԱԿ

Ա. ԲՈԲՐՈՎՍԿԻ

## ՕԿՈՒՊԱՑՎԱԾ ԼԻԲԱՆԱՆՈՒՄ

*Ամերիկյան և անգլիական լկտի ինտերվենցիան Լիբանանում ու Հորդանանում շարունակվում է։ Ամերիկյան հրամանատարությունը Լիբանանում ափ է հանել ծովային հետևակի մոտ 20 հազար զինվոր, ուժեղացված տանկերով, հրետանիով և ավիացիայով։ Օկուպացիոն այդ զորքերը իրենց քանակով ավելի քան երկու անգամ գերազանցում են լիբանանական բանակին։ Ծովից ինտերվենտներին պաշտպանում է ԱՄՆ-ի 6-րդ Միջերկրականի նավատորմը, որի նավերի վրա տեղավորված են հազարավոր «պահեստային» զինվորներ, տանկային և հրետանային զորամասեր։ Ավիակիրներից և ամերիկացիների կողմից գրաված օդանավակայաններից ռազմական ռմբակոծիչները անընդհատ «պարեկային» թռիչքներ են կա-*



*տարում Լիբանանի մայրաքաղաք Բեյրութի և երկրի մյուս շրջանների վրա։*

*Սկզբնական շրջանում ամերիկյան զորքերը կենտրոնացված էին Բեյրութի մոտ։ Այնուհետև տանկերի քողարկման տակ ծովային հետևակի ջոկատները սկսեցին մեկը մյուսի հետևից պլանային կարգով գրավել Լիբանանի ստրատեգիական տեսակետից կարևոր շրջանները։ Մտնելով Բեյրութ ինտերվենտների զորքերը շրջապատեցին կառավարական շենքերը։ Քաղաքի փողոցների խաչմերուկներում և հրապարակներում զորքերը հապճեպորեն գնդացրային կրակակետեր էին կառուցում, ամերիկյան հարբած զինվորների կողմից, հատկապես Բեյրութի քաղաքամերձ վայրերում, լիբանանական հայրենասերների սպանությունը, մասնավոր տների և խանութների թալանը, կանանց բռնաբարումը սովորական, ամենօրյա երևույթ են դարձել։*

*Վերջին ժամանակներս ամերիկյան զորքերը առաջ են շարժվել երկրի հեռավոր լեռնային շրջանները, որոնք վերահսկվում էին լիբանանական ապստամբների կողմից և կտրել են կարևոր հաղորդակցության ճանապարհները, այդ թվում Բեյրութ-Դամասկոս խճուղային ճանապարհը։ Լիբանանի «օրի-*

ան» թերթը հաղորդում է, որ ամերիկյան զորամասերը Մեթն օկրուգում առաջ են շարժվել մինչև Վադի-Բուտմի անտառային մասիվը, ինչպես նաև գրավել են Սանին կոչվող լեռնային մասիվների բարձունքները։ Այդ շրջաններում ամերիկյան սակրավորները կառուցում են դոտեր և ամրացված տեղամասեր, որտեղ բերվում են մեծ տրամաչափի հրետանի, վայրեջքի հրապարակներ են պատրաստվում ռազմական ուղղաթիռների համար։ Ամերիկյան տանկային ստորաբաժանումները բլոկադայի են ենթարկել ճանապարհները, լրիվ 24 ժամյա հերթապահություն են սահմանել այն շրջանների նկատմամբ, որտեղ վերահսկում են ապստամբները։

Այստեղ Լիբանանի գավառներում ևս ամերիկյան ռազմամոլները հանցագործություններ են կատարում։ Դամասկոսի «Ալ-չումհուր» թերթը բերում է Լիբանանից ժամանած ականատեսների պատմածները Հյուսիսային Լիբանանում ամերիկյան ինքնաթիռի կողմից լեռնային մի գյուղի անիմաստ ու դաժան ռմբակոծման մասին։ Նետած ռումբերից մեկի պայթման հետևանքով քանդվել է մզկիթը և սպանվել մուեդզինը։ Ահա և մեկ ուրիշ օրինակ։ ԱՄՆ-ի ծովային



հետևակի մի ջոկատ Բահալբեկ քաղաքը տանող ճանապարհին գիշերելու է մնացել մի փոքրիկ գյուղում։ Ամերիկացիների ծաղրն ու ծանակը գյուղի բնակիչների մեջ հուզում է առաջացնում, տեղի է ունենում փոխհրաձգություն, որի հետևանքով ջոկի հրամանատարը և մի քանի զինվորներ վիրավորվում են։ Ամերիկացիները վրիժառության նպատակով այրում են գյուղը։

Լիբանանի ամերիկյան օկուպացիայի ձգձգումը նոր թշվառություններ է բերում լիբանանական ժողովրդին, բարդացնում է, առանց այդ էլ լարված դրությունը Արաբական Արևելքում։ «Ամերիկան,— գրում է Լիբանանի «Տելեգրաֆ» թերթը,— ուզում է իր թաթը դնել Միջին Արևելքի երկրների բնական հարստությունների վրա, միջամտում է նրանց քաղաքական և տնտեսական գործերին և թույլ չի տալիս դրանց զարգացմանը՝ այդ շրջանի ժողովուրդների շահերին համապատասխան»։

Ամբողջ Լիբանանում գնալով աճում է պահանջը ամերիկյան զորքերը երկրից դուրս բերելու մասին։ Լիբանանական հայրենասերները ուժեղացնում են օկուպանտների դեմ մղվող պայքարը։ Նրանք արդեն խփել են երկրի վրա թռիչք կատարող ամերիկյան

մի քանի ռմբակոծիչներ, սնայպերական կրակով գնդակոծում են ամերիկյան զորանոցները, պարեկներին և հենց Բեյրութում գտնվող տանկային պահակակետերը։ Լիբանանական պառլամենտի և «Ազգային ճակատի» անդամ Նասիմ Մաջալինին հայտարարել է, որ ամերիկյան ռազմական ինտերվենցիայի դեմ հանդես է գալիս լիբանանական ժողովրդի 90 տոկոսը։ «Մենք կպայքարենք այնքան ժամանակ,— հայտարարել է Տրիպոլի քաղաքի ապստամբների լիդեր Ռաշիդ Կերամեն,— մինչև որ ամերիկյան վերջին զինվորը չհեռանա մեր երկրից։ Մենք գիտենք, որ այդ պայքարում մենք մենակ չենք, մեզ հետ են արաբական ժողովուրդները և ամբողջ աշխարհի դեմոկրատական ուժերը»։

## ՏԵՌՈՐԸ ՀՈՐԴԱՆԱՆՈՒՄ

Հուսեյին Թագավորը իր պալատից դուրս է գալիս միայն գաղտնի կերպով։ Նրան «վիլիսների» և մոտոցիկլների վրա ուղեկցում են գնդացիրներով ու ավտոմատներով զինված 60 ամենահուսալի պահապաններ։ Ճանապարհի երկարությամբ, յուրաքանչյուր բլրակի վրա, խաչմերուկներում զինվորական պահակակետեր են դրված։ Ջրահապատ



«կադելյակի» ղեկի մոտ, որի մեջ Հուսեյնը վախվխելով ճամբորդություն է կատարում «իր երկրում» նստում է անգլիական հակահետախույզ Մորիս Ռեյները ։

Ո՞ւմից է վախենում Հուսեյնի կլիկը։ Ո՞ւմ դեմ են ուղղված այդ հրեշավոր միջոցառումները։ Անգլիական բուրժուական «Նյուս քրոնիկլ» թերթի թղթակից Ռիչարդ Բիստոնը հիասթափությամբ նշում է, որ Հուսեյինը պետք է վախենա իր սեփական «հպատակներից» և այն որ Հորդանանում անգլիական ինտերվենցիան դեմ է գնում հորդանանցիների մեծամասնության ցանկությանը։ Եթե չլիներ անգլիական զորքը, գրում է Բիստոնը, նրանք, այսինքն, հորդանանցիները, «վաղը ևեթ կազատագրվեն Հուսեյինից»։ Այդ բանը հաստատում է նաև ամերիկյան «Պոստ դիսպետչ» թերթի թղթակից Ռիչարդ Դադմենը։ Ամմանից նա գրում է, որ Հուսեյինը իշխանության գլուխ է մնում «միայն շնորհիվ անգլիական պարաշյուտիստների ներկայության և քաղաքական տեռորի դաժան կամպանիայի»։

Իսկապես, Հորդանանում տեռորը հասել է հրեշավոր չափերի։ Բանտարկվում և դաժան տանջանքների են ենթարկվում ինտելիգենցիայի գործիչները, երիտասարդությունը,

բանվորները, գյուղացիները։ Հուսեյինը վախենում է նույնիսկ իր պաշտպաններից։ Արաբական լեգիոնի հարյուրավոր սպաներ և զինվորներ վերջին ժամանակները բանտարկվել ու գնդակահարվել են, որոնց թվում և թագավորի անձնական համհարզը։

Անգլիական բուրժուական մամուլի խոստովանությամբ, Հուսեյինը հանդիսանում է անգլիական իմպերիալիստների հլու կամակատարը։ Իսկ «Նյու-Յորք հերալդ տրիբյուն» թերթը ներկայիս Հորդանանը գնահատում է որպես «էյզենհաուերի դոկտրինայի բաստիոնը»՝ Արաբական Արևելքի երկրներում։

Վաշինգտոնի և Լոնդոնի համար Հորդանանի արժեքը կայանում է մի այլ բանում։ Այդ երկրից, որը գտնվում է Արաբական Արևելքի կենտրոնում, նրանք ռազմական և քաղաքական ճնշում են գործադրում հարևան բոլոր երկրների՝ Իրաքի, Միացյալ Արաբական Ռեսպուբլիկայի, Սաուդյան Արաբիայի, Արաբական թերակղզու փոքր իշխանությունների վրա։ Առաջ այդ դերը կատարում էր Իրաքը անգլիական ռազմական բազաների և բանակի հետ միասին։ Իրաքում կատարված ռևոլյուցիան խճողեց գաղութարարների պլանները։ Այժմ հույսը դրվում է Հուսեյինի թագավորության վրա։ Օկուպացիայի նպատակները, ընդգծում է հնդկական «Դելի թայմս» թերթը պարզ են՝ հարմար մոմենտին ագրեսիա կազմակերպել նոր Իրաքի և ՄԱՌ-ի դեմ, ինչպես նաև պայմաններ նախապատրաստել արաբական երկրներում ռազմական բազաներ ստեղծելու համար։





Ամերիկյան և անգլիական նավթային կոնցերները, որպես հսկայական ծովահրեշներ իրենց շոշափուկներով պատել են Արաբական Արևելքը և նրա ընդերքից միլիարդների հասնող եկամուտներ են ծծում։ Հանուն այդ եկամուտների է, որ ամերիկյան ծովային հետևակը օկուպացնում է Լիբանանը, հանուն այդ բանի է, որ անգլիական պարաշյուտիստները դոփում են հորդանական հողը, կատարում են հորդանական հայրենասերների սպանություններ։

ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի արտակարգ հատուկ սեսիան դատապարտեց անգլո-ամերիկյան ինտերվենցիան, միաձայն որոշում ընդունեց Անգլիայի և ԱՄՆ-ի զորքերը շուտափույթ կերպով Հորդանանից և Լիբանանից դուրս բերելու մասին։ Գլխավոր Ասամբլեան հանձնարարեց չմիջամտել արաբական երկրների ներքին գործերին,

նրանց հնարավորություն տալ խաղաղ գոյակցության հինգ հայտնի կանոնների հիման վրա լուծելու իրենց գործերը։

Սակայն ԱՄՆ-ը և Անգլիան մարտահրավեր են նետում բոլոր ժողովուրդներին, շարունակելով Լիբանանի և Հորդանանի օկուպացիան։ Ավելին։ ԱՄՆ-ը և Անգլիան օկուպացված երկրներում ավելացնում են իրենց ռազմական ուժերը և ռազմա-ստրատեգիական շինարարություն են կատարում։

Չնայած անգլո-ամերիկյան ինտերվենտների մեքենայություններին, նրանց ագրեսիվ գործողությունները Միջին Արևելքում դատապարտված են ձախողման։ «Բոլոր արաբները,— գրում է դամասկոսյան «Ան-Նուր» թերթը լի են վճռականությամբ ստիպել ագրեսորներին թողնել արաբական հողը»։

Սովետական մարդիկ ամբողջ երկրագնդի ժողովուրդների հետ միասին պահանջում են վերջ դնել Միջին Ասիայում իմպերիալիստական ինտերվենցիային և հաստատ համոզված են, որ արաբական ժողովուրդների արդար գործը հաղթանակով կպսակվի։

---

## СОДЕРЖАНИЕ




**Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ**